իրաւունքներու զրկման, իշխան Էսթէրազի՝ 15 տարուան եւ գոյքերու գրաւման, Հայր Նաճի՝ երեք տարի բանտարկութեան, Հայր Իսփանաքի՝ ցկեանս բանտի եւ գոյքերու գրաւման, Պ. Թօթ՝ 10 տարուան եւ կալուածներու գրաւման:

Բոլոր դատապարտեալներն ալ, բացի իշխան Էսթէրազիէ եւ աբբայ Զաքարէ, վերաքննութեան դիմեցին:

Արտասահմանի մէջ մեծ յուզում առաջ բերին այս վճիռները: Մ. Նահանգներու արտաքին նախարարը 12000 բողոքի նամակներ ստացաւ: Տին Էչիսընէն կը խնդրեն հարցը տանիլ «Միացեալ Ազգերու»ն առջեւ:

## «ՆԱԽ ՊԵՐԼԻՆԻ ԽՆԴԻՐԸ ԿԱՐԳԱԴՐԵԼ»

### ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԷ ՌՈՊԷՐ ՇՈՒՄԱՆ

Արտաքին Նախարար Ռոպէր Շուման մամուլի ներկայացուցիչները ընդունելով յայտարարեց թէ՝ Պերլինի խնդիրը առաջին տեղը կը դրաւէ աշխարհի մէջ. հոն է որ խաղաղութիւնը փորձութեան կ'ենթարկուի: Չորս արտաքին նախարարներու խորհրդաժողով մը անկարելի է, որքան ատեն որ Պերլինի խնդիրը չէ կարգադրուած: Ամէն բանէ առաջ, ու հակառակ մարաջախտ Սթալինի առաջարկներուն, պէտք է կարգադրել Պերլինի խնդիրը: Ֆրանս. կառավարութիւնը կը կարծէ որ եղածը պարզապէս դրամական թէքնիք խնդիր մըն է:

Գալով Եւրոպայի խորհրդակցական ընդհ. ժողովին, նախարարին համաձայն ատիկա կրնայ դումարուիլ ապրիլին. վայրը չէ որոշուած դեռ: Եւրոպական Միութիւնը ոչ մէկ զինուորական հանգամանք կը ներկայացնէ:

Լոնտոնի մէջ Աւստրիոյ հետ դաշնագիր կնքելու համար վերսկսած բանակցութիւններուն ակնարկելով, նախարարը յոյս յայտնեց թէ փոխադարձ բարեկամեցողութեամբ, յոյս կայ որ անոնք լաւ ելքի մը յանգին:

### ՍԷՈՒՏԻ ԱՐԱԲԻՈՅ ՔԱՐԻՒՂՆԵՐԸ

Համաձայնութիւն գոյացած է Իպնը Սէուտ Թագաւորին եւ ամերիկեան «Pacific Western Oil Corporation» ընկերութեան միջեւ, Սէուտի Արաբիոյ քարիւղներու մենաշնորհին համար:

Թագաւորը բացի չէզոք գօտիի մը վրայ քարիւղի շահագործում կատարելու իրաւունքէն, կանխիկ պիտի ստանայ ինունկէս միլիոն տոլար, տարեկան մէկ միլիոն տոլար եւ քարիւղի իւրաքանչիւր տակառին վրայ 5 սէնթ: Ասկէ զատ իրեն պիտի պատկանին արժեթուղթերուն 100ին 25ը, սակայն նոր ընկերութեան մէջ քուէի իրաւունք պիտի չունենայ:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՆԵՐՔԻՆ ՓՈԽԱՌՈՒԹԵՆԷՆ 152 միլիառ Ֆր. գոյացած էր մինչեւ Փետրուար 5: Կառավարութիւնը մեծ յաջողութիւն մը կը նկատէ ասիկա:

ՓԱՐԻԶԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ նախկին վարիչ Տոքթ. Կիւսթավ Ռուսի նախարարական խորհուրդին կողմէ պաշտօնանկ ըլլալով անձնասպանութիւն փորձած էր երկու անգամ եւ չորս ամիս առաջ մեռած: Դատական իշխանութիւնները քննելով իր պարագան, գտան որ հանգուցեալը բոլորովին անմեղ էր: Ֆրանսայի բժիշկ. կաճառը առջի օր միաձայնութեամբ որոշեց անոր անունով կոչել «Ֆրանս. Բաղցկեղի Հիմնարկութիւնը»:

ՀՈԳԵՀԱԳԻՍՏ – ՊԱՏԱՐԱԳ.— Տէր եւ Տիկին Վալանթին Աչճեան կը ծանուցանեն թէ իրենց յաւէտ ողբացեալ զաւկին ՍԻՒԶԱՆ ՄԻՆԷԼԵԱՆԻ (ծնեալ Աչճեան) մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պատարագ պիտի մատուցուի այս կիրակի ժամը 10ին, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 rue Jean Goujon: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները: Այց գերեզմանատուն, կէսօրէն վերջ:











ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ Ս. ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վարդգէս խումբի կողմէ: Կը բեմադրուի Ղ. Մելոյեանի ԱՐՄԵՆՈՒՇԸ:

12 Փետրուար շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Սալ ժան տ'Արքի սրահին մէջ, ինչպէս նաեւ զաւեշտ մը՝ ԵՐԿՈՒ ԾԱՅՐԱՅԵՂՆԵՐԸ: Սրահը տաքցուած է:

Հ. Մ. Ը. Մ.Ի ՄԱՐՍԷՅԼԻ վարչութիւնը իր ջերմ շնորհակալութիւնը կը յայտնէ Blida (Algerie)ի Հ. Մ. Ը. Մ.ականներուն որոնք իրենց շրջանակին մէջ հաւաքելով 10.000 Ֆրանքի գումար մը նուիրած են Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի քանըհինգամեակի բեղուն գործունէութեան առթիւ:

Հանգանակութեան մասնակցողներն են.— Օ. Սարաֆեան 3000 Ֆրանք, Պ. Արզումանեան 2000, Տ. Սարաֆեան, Յ. Պալոեան, Կ. Հաճիաւետիսեան 1000ական, Հ. Տիւրկէրեան, Ղ. Գալփագճեան, Գ. Հաճիպէքեան, Եղբայր Գազանճեան 500ական Ֆրանք:



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէին ժողովը այս շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Sociétés Savantes, G. սրահը:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Վռամեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս կիրակի, ժամը 4ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՎԱԼԱՆՍԻ Շրջանային կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները՝ այս շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, սովորական տեղը: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրերով:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին ընկերական ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն, ժամը 8.30ին, դպրոցի սրահը, 178 rue Rabelais: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի դասախօսութիւնը այս հինգշաբթի ժամը 9ին, Sociétés Savantesի մէջ: Կը խօսի ընկեր Հ. Աբրահամեան: Նիւթ «Հայկական Դատը»: Հայերէնի դասընթացք ժամը 8—9:

Հ. Յ. Դ. ԻՍԻԻ Զաւարեան կոմիտէի ժողովը այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին: Օրակարգ՝ նախորդ ժողովի շարունակութիւնը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼԻ Վարդան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սարսէլի սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր ընկերներէն անպայման ներկայ գտնուիլ:

ԹԷՅԱՍԵՂԱՆ Ի ՊԱՏԻՒ ԴԱՍԱԽՕՍՆԵՐՈՒ եւ ծնողներու, կազմակերպուած Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՓԱՐԻԶԻ մասնաճիւղին կողմէ, կիրակի 13 Փետր., ժամը 3 — 8 Sociétés Savantesի յարակից սրահին մէջ, 6 rue Danton, métro Odéon:

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Շավիլի եկեղեցական վարչութիւնը կը հրաւիրէ հասարակութիւնը ներկայ ըլլալ իր դպրոցական Ամանորի հանդէսին, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի, կէսօրէ վերջ, ժամը ճիշդ 15ին, Շավիլի եկեղեցիին մէջ: Կաղանդ Պապան նուէրներ պիտի բաժնէ դպրոցի աշակերտներուն: Գեղարուեստական բաժին, երգ եւ արտասանութիւն:






Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)

La Gérant : A. NERCESSIAN

կան մարդոց շատ շատերուն բարոյական կեանքը մաքուր է: Բայց դարերէ ի վեր ժառանգուած հիւանդութիւնը կայ եւ կը մնայ: Ինչպէս Իթթիհատի, նոյնպէս եւ Հանրապետութեան օրով ապօրինի հարստութիւններ կը դիզուին, շնորհիւ անձնական ազդեցութեան մը չարաչար գործածումին: Կան երեսփոխաններ բոոնք շնորհիւ իրենց դիրքին, պետական գործերու միջնորդած եւ լեցուցած են իրենց գրպաննները»:

## ԵՐԿՈՒ ՀԱՅԵՐ ՋՈՀ ԳԱՑԻՆ ՀԱԼԷՊԻ ՄՐՑՈՒՄԻՆ

Հալէպի «Արեւելք»ի մէջ կը կարդանք. —

Կիրակի օր, կէսօրէ վերջ, Պէյրութի Հ. Մ. Ը. Մ.ի եւ «Րասինկ Քլիւպ»ի միջեւ տեղի ունեցաւ ախոյեանական մրցում մը: «Րասինկ Քլիւպ» առաջին կիսախաղին իսկ չարաչար պարտութեան մատնուեցաւ եւ բերդապահը քաշուեցաւ խաղէ: Ուրիշ բերդապահ մը նշանակուեցաւ եւ խաղը շարունակուեցաւ:

Հ. Մ. Ը. Մ. շարունակեց յաղթական մնալ: Փենալթիի խնդրի մը շուրջ, վէճ մը սկսաւ եւ ժողովուրդը խուժեց իրաւարարին շուրջ: Այս միջոցին բազմութեան մէջէն տեղացի մը կրակ բացաւ, որուն գնաց ներկայ բազմութենէն Յակոբ անուն երիտասարդ մը, որ կուրծքէն երկու գնդակ ստացած էր: Երկրորդ մըն ալ ծանրօրէն վիրաւորուեցաւ: Վիրաւորը փոխադրուած է «Օթէլ Տիէօ» հիւանդանոցը: Ոճրագործը ձերբակալուած է:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԼԵՀԱՍՏԱՆԻ Հանրային Ապահովութեան նախարարը յայտարարեց թէ օտար կեդրոններու աջակցութեամբ սարքուած էր այն դաւը որ երեւան հանուեցաւ վերջերս: Կալանաւորներուն մէջ կը գտնուին բազմաթիւ անդամներ դիմադրական ճակատէն, որոնք իբրեւ թէ գործիք դարձած էին անգլեւսաքսոն աշխարհականներու: Նախարարը աւելցուց թէ փաստերով պիտի ապացուցանեն որ ստորերկրեայ տարրեր կը փորձէին պատերազմական խուճապ յարուցանել երկրին մէջ, աջակցութեամբ արտաքին ուժերու: Ամբաստանեալներուն մէջ կը գտնուի գնդ. Մազուրքեվից, որ բանակի մը գլուխն անցած կը կռուէր Նացիներուն դէմ:— Վարշաւայի մէջ ձերբակալուեցան 34 կաթոլիկ քահանաներ, հովուական թուղթ մը կարդացած ըլլալով: Միայն ութ ամբաստանեալներ վար դրուեցան:

ՄԱՐՇԸԼԻ ԾՐԱԳՐԻՆ երկրորդ տարեշրջանին առթիւ, ամերիկեան լիազօրը զեկուցում տալով Ուաշինկթընի մէջ, բացատրեց թէ Ֆրանսայի ժողովուրդը պէտք է կարգ մը զոհողութիւններ կրէ, ապագայ բարիքները վայելելու համար: Ուստի անհրաժեշտ կը գտնէ որ թղթադրամի աճումը սահմանափակուի, զարկ տրուի արտադրութեան, ընկերային պայմանները բարեփոխուին են.:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ կառավարութիւնը մեծագումար գնումներ կը կատարէ, կասեցնելու համար հողագործական արտադրութեանց գիներուն անկումը: Միեւնոյն ատեն քննութիւններ կը կատարուին, չարաշահութիւնները խափանելու համար:

ՀԻՒԼԷԱԿԱՆ ՌՈՒՄԲԵՐՈՒ մասին եղած հարցումի մը պատասխանելով, Նախագահ Թրումըն վճռապէս յայտարարեց թէ Մ. Նահանգները երբեք պիտի չյայտնեն իրենց պատրաստ ռումբերուն քանակը, ինչպէս պահանջած էր խորհրդային պատուիրակը, Ապահովութեան Խորհուրդին առջեւ: Եւշեշտեց թէ այս խնդիրը չի կրնար առարկայ դառնալ հրապարակային վիճաբանութեան:

ԹՂԹԱԴՐԱՄԻ ՇՐՋԱԲԵՐՈՒԹԵԱՆ գումարը 1.001.667.000.000 ֆրանքի հասած էր անցեալ շաբթու, ինչ որ աննախընթաց պարագայ մըն է Ֆրանսայի պատմութեան մէջ: Փետրուար 3ին վերջացող շաբթուն յաւելումը եղած էր 29.064.000.000 ֆրանք: Միեւնոյն ատեն պետական գանձը 27 միլիառ 100 միլիոն ֆրանքի գումար մը քաշած էր Պանք տը Ֆրանսէն: Իրազեկներ կը հաւաստեն թէ կացութիւնը հետզհետէ պիտի բարւոքի, շնորհիւ նոր փոխառութեան որուն գումարը հասած է 160 միլիառ ֆրանքի:

ՊԵՐԼԻՆԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԸ, Տոքթ. Ռէօյթըր, առաջին գերման պաշտօնատարը որ Փարիզ եկած է անպայման անձնատրութենէն ի վեր (1945 Մայիս 7), Ֆրանսայի աջակցութիւնը խնդրած է, արեւմտեան Պերլինը կցելու համար արեւմտեան Գերմանիոյ, իբրեւ առանձին պետութիւն: Արտաքին նախարարը խոստացաւ քննել այս խնդիրը, բայց իրազեկներ կը հաւաստեն թէ Ֆրանսա համաձայն չէ այս առաջարկին:

ՍԱԿԱՐԱՆ (Եշ.).— Սթերլին 1062 (1410), տոլար 319 (475), զուից. ֆրանք 80.10 (113): Նափոլէոն 5650, սթերլին 6825, զուից. ոսկի 5450, տոլար (20նոց) 26.900: Ձոյլ ոսկի 760.000 ֆրանք:

250 ԿՐԱՄ ԿԱՐԱԳ պիտի բաժնուի Սէնի նահանգին մէջ, թիւ 33 կտրոնով: Նաեւ ձէթ, համաձայն իւրաքանչիւր դասակարգի:

ՓԱՐԻԶԻ պանդոկներու պաշտօնեաներէն 46 հոգի ձերբակալուեցան, սեւ շուկայի առեւտուր կատարած ըլլալով տոլարի, սթերլինի եւ զուիցերիական ֆրանքի վրայ: Խուզարկութեանց հետեւանքով ոստիկանութիւնը գրաւեց վեց միլիոն ֆրանքի օտար դրամներ:

---

# ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

(ՀԱՅ ՎՇՏԻ ԵՒ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԵՐԳԻԶԸ)

Կազմակերպուած Հ. Ե. Դ. ՍԷՆ ԺԷՌՈՄԻ «Հայաստան» ենթակոմիտէին կողմէ, հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. Կոմիտէին: Փետր. 21, երեքշաբթի երեկոյ ժամը 9ին Trianon Cinémaին մէջ:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ. Ե. Դ. Սէնթ Էթիէնի Անտոք ենթակոմիտէն իր ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Ս. Խաչիկեանի եւ իր պարագաներուն, նոյնպէս Պ. Ս. Սիմոնեանին, իրենց սիրելի քրոջ եւ մօր Տիկին ՍԻՄՈՆԵԱՆի դառն կորուստին առթիւ:




Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)

La Gérant : A. NERCESSIAN


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Ե. Դ. Վռամեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս կիրակի, ժամը 4ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼԻ Վարդան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Սարսէլի սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի բոլոր ընկերներէն անպայման ներկայ գտնուիլ:

ԳՆԴԱԽԱՂԻ ՄՐՑՈՒՄ.— Փետրուար 13ին առտուն ժամը 10ին Stade Olierի մէջ (11 rue d'Arcueil, La Vache Noire), բարեկամական մրցում Հայ Մարզական Միութեան (U. S. A.) Ա. խումբին, Red – Starի հետ:



## «ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐ»

Ալֆորվիլի Հ. Ե. Դ. Նոր Սերունդի կողմէ շքեղ Երեկոյթ պարահանդէս, Մարտ 26ին:

Orchestre Tango Typique համբաւաւոր Quintin Verdu: Մանրամասնութիւնները յաջորդով:

թիւն։ Հիմնած են եկեղեցի եւ դպրոց։ Քրտական տարազին տակ՝ անխախտ մնացած է Հայու հոգին։ Զախոյի հայ մանուկը մեծ երկիւղածութիւն ունի դէպի հայ. եկեղեցին, եւ անյագ ծարաւ դէպի հայ խօսքը եւ հայկական դպրոցը, թէեւ վերջերս ուսուցիչի չգոյութեան հետեւանքով դպրոցը փակ կը մնայ։

---

ըլլայ։ Եթէ որոշէ միանալ Ատլանտեանի դաշինքին, Տանըմարքա եւ ուրիշ կարգ մը երկիրներ, թերեւս Շուէտն ալ պիտի հետեւին իր օրինակին։ Իսկ եթէ հեռու մնայ Ատլանտեանի դաշինքէն, կը նշանակէ թէ կ'ուզէ մօտենալ Խ. Միութեան։

★ Շուէտի պատերազմական նախարարը յայտարարեց թէ մօտ հազար օդանաւեր աւելցած են, պատերազմի դադարումէն ի վեր եւ թէ 70 միլիոն տոլար ծախսած են, ռազմական պիտոյքներ գնելու համար։

## Քրավչէնքոյի դատը

### ՆՊԱՍՏԱՒՈՐ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐ

Դչ. օր շարունակուեցաւ դատավարութիւնը (12րդ նիստ), ի բացակայութեան Քրավչէնքոյի, որ նուաղում մը ունեցած եւ անկողին ինկած էր, իբրեւ հետեւանք ստամոքսի ուռի մը։

Այս նիստին մէջ լսուեցան չորս վկաներ, որոնք քերուած էին Գերմանիոյ տարագիրներու կայաններէն եւ նպաստաւոր խօսեցան Քրավչէնքոյի մասին։ Առաջին վկան, Միխայիլ Փասեչնիք, իր դիմացը գտաւ խորհրդային վկայ մը, Վասիլինքօ, որ պատերազմի ոճրագործ կոչեց զինքը։ Վկան արհամարհանքով հերքեց այս մեղադրանքը, յայտարարելով թէ ինք կ'աշխատէր Տնիէփրոփեթրովսքի քաղաքապետութեան մէջ, եւ թէնոյնիսկ ձերբակալուեցաւ Կեսթափոյին կողմէ։

Երկրորդ վկան, Տիկին Կորնիէնքօ, պատերազմէն առաջ եղած է վարիչը գործարանի մը գրադարանին (150.000 գիրք)։ Ըստ թէ 1925ին ձերբակալուեցաւ գործարանին ընդհ. տնօրէնը, յետոյ իրարու ետեւէ՝ իր յաջորդները։ «Շատ երկար պիտի ըլլար թուել մաքրագործումի զոհերը։ Ցիսունի մօտ էին միայն գործարանի ղեկավարութեան զոհերը»։ Շատ կանուխէն կը ճանչնայ Քրավչէնքօն, երբ ան մատենադարանն կ'երթար, ուսումնասիրութիւններ կատարելու համար։ Իրեն (վկային) պաշտօն յանձնած էին լրտեսել հինգ հոգի՝ իր ընտանեկան բարեկամներէն, ըսել թէ ինչ կ'ըսեն եւ գրի առնելով հաղորդել Չեկային (N. K. V. D.), այլապէս իր աղջկան արիւնը պիտի մտնէր։

Փաստաբան Իզար.— Եւ ահաւասիկ ելեր են կը պաշտպանեն այս տեսակ վարչաձեւ մը։

Միւս փաստաբանը.— Վարչաձեւր երկրի մը որուն դէմ պատերազմ կը պատրաստէք։ (Ծիծաղներ)։

Երրորդ վկան, Ուկրայնացի Տիկ. Քաչինսքա, որ նոյնպէս բռնի տեղափոխուած էր Գերմանիոյ կողմէ, պատմեց 1932 — 33ի սովին սարսափները։

— «Մեր ապրած գիւղին մէջ ողջ մարդ չէր մնացած։ Ուսանողները չէին կրնար հասնիլ իրենց գործերուն, որովհետեւ անօթի էին։ Դիակներ կը տեսնէինք բոլոր փողոցներուն մէջ։ Ուկրայնացիները անօթութենէն կը մեռնէին, իսկ իրենց ամբարած ցորենը կը ծառայէր համաշխարհային յեղափոխութեան ծախքերը հոգալու։ Միլիոնաւոր զոհեր ունեցանք։ Ես անձամբ տեսայ հարիւրաւորներ։ Տիկին Կարլովան ալ (Քրավչէնքոյի Աւկինը) ինծի պէս գիտէ որ անդամաղնական հաստատութեան սրահները լեցուած էին «հում նիւթերով»։

Չորրորդ վկան, Պապունին, պարզապէս յայտարարեց թէ Քրավչէնքոյի պատմած բոլոր դէպքերը ճիշդ են եւ նկարագրեց իր ձերբակալութիւնը Կէփէուի կողմէ եւ հանրածանօթ բարբարոսութիւնները։

★ Զախակողմեան շաբաթաթերթին փաստաբանը յայտարարեց թէ դեռ 18 վկաներ ունի, բայց 11ը պիտի չհրաւիրէ, որպէսզի աւելի չերկարի դատը։ Քրավչէնքոյի փաստաբանն ալ ըսաւ թէ պիտի ներկայացնէ գրքին ռուսերէն բնագրին պատճէնները։

### ԲԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍԱԿԱՐԱՆ.— Ֆրանքը զգալի բարձրացում մը ունեցաւ առջի օր, հասնելով սակի մը որ տեսնուած չէր անցեալ Սեպտեմբերէն ի վեր։ Տոլարը 450էն 430ի իջած էր սեւ շուկային մէջ։ Ոսկին ալ ինկաւ։ Ահաւասիկ Դշ. օրուան գիները.— Սթեռլին 1062 (1280), տոլար 318.20 (430), զուից. Ֆր. 79.90 (109)։ Նափոլէոն 5425, սթեռլին 6300, զուից. ոսկի 5125, տոլար (20) 24.900, ձոյլ ոսկի 710.000 ֆրանք (մէկ շաբաթ առաջ 807.500 ֆրանք էր)։

ԵՒՐՈՊԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ մայրաքաղաք որոշուեցաւ Սթրազպուրկը։ Առաջին ժողովը պիտի գումարուի մարտին։



### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէին ժողովը այս շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Sociétés Savantes, G. սրահը։

ՊԱՆԵՕ ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. Արծիւ ենթակոմիտէին ընդհ. ժողովը այս ուրբաթ գիշեր, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մասնաճիւղին դասախօսական ժողովը՝ այս ուրբաթ, Ակումբին մէջ։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը՝ այս շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Խրիմեան սրահը։ Օրակարգ՝ նախորդ ժողովին շարունակութիւնը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը խիստ պարտաւորիչ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Ա. Ահարոնեան Ակումբին մէջ։ (26 rue Convalescents)։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Սէնթ Անթուանի ընկեր Կարօ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին, սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. Արղութեան խումբի ժողովը, այս շաբաթ երեկոյ ժամը 9ին, ընկեր Պ. Քիւլչէեանի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Բացակաները նկատի կ'առնուին։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Գիւլխանդանեան խումբի (Սէնթ Անթուան) ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ, Hotel Terminus, ժամը 8.30ին։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Պոմոնի Զաւարեան ենթակոմիտէի վարչութիւնը, ընդհ. ժողովի կը հրաւիրէ Պոմոնի «Ահարոնեան» եւ «Արմէն Գարօ» խումբերու բոլոր ընկերները, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ՓԱՐԻԶԻ Հայ Մարզ. Միութեան թէյասեղանը 13 Մարտ, կիրակի կէսօրէ վերջ։ Կը խնդրուի նկատի ունենալ թուականը։



Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)
La Gérant : A. NERCESSIAN

արտօնութիւն առնել արտաքին նախարարէն։ Միայն պարկեշտ եւ վստահելի պուլկար քաղաքացիներ կրնան կղերական կա մեկեղեցւոյպաշտօնեայ ըլլալ, պայմանաւ որ զրկուած չըլլան իրենց քաղաքացիական իրաւունքներէն։

Օրինագիծը բաժնուած հռչակելով Եկեղեցին եւ Պետութիւնը, պետական նպաստ կը խոստանայ,«ուր որ պէտք ըլլայ» եւ օրթոտոքս Եկեղեցին կը հռչակէ «աւանդական կրօնը պուլկար ժողովուրդին, իբրեւ ժողովրդավար եկեղեցի ձեւով եւ ոգիով»։

Օրինագծին նախաբանը կ'ըսէ.— «Պուլկարիոյ ժողովրդական հանրապետութեան բոլոր քաղաքացիները կը վայելեն ազատութիւն խղճի եւ կրօնի» եւ կը յայտարարէ թէ օրէնքին նպատակն է «անկախութիւն եւ ազատութիւն ապահովել»պուլկարական բոլոր եկեղեցիներուն։

★ Պուլկարիոյ եօթը միլիոն բնակիչներուն վեց միլիոնը օրթոտոքս եկեղեցւոյ կը պատկանին։ Մնացեալները մեծ մասով իսլամներ են։ Կան 50.000 հռոմէական կաթոլիկներ, 16 հազար բողոքականներ։ Հայերու թիւը՝ 25—30 հազար։

★ Փետրուար 25ին Սոֆիայի մէջ պիտի դատուին այն 15 բողոքական պատուելիները որ ձերբակալուած են իբրեւ լրտես Անգլեւսաքսոններու։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՐԻԷՍԹԷԻ ազատ շրջանին կառավարիչ առաջարկուած էր Անգլիոյ կողմէ Զուիցերիացի մը, Հէրման Ֆլուքիկէր, նախկին դեսպան Մոսկուայի։ Խ. Միութիւնը, որ մինչեւ հիմա կը մերժէր բոլոր թեկնածուները, հաւանութիւն յայտնեց այս անգամ։

ՈՍԿԻԻ ԱՆԿՈՒՄԻՆ առթիւ, կարգ մը թերթեր կը գրեն թէ շատ մը հողագործներ ոսկի կը ծախեն։ Միւս կողմէ, Խ. Միութիւնը մեծաքանակ ոսկի կը ծախէ — կ'ըսեն սեղանաւորական շրջանակներու մէջ — չփոթութեան մատնելու համար այն երկիրները որ կ'օգտուին Մարշըլի ծրագրէն։

ՍԱԿԱՐԱՆ (Եչ.)— Սթերլին 1062 (1175), տոլար 318.20 (440), զուից. ֆրանք 79.85 (105)։ Նափոլէոն 5225, զուից. ոսկի 4925, սթերլին 4925, տոլար (20) 24.000։ Ջոյլ ոսկի 690 հազար ֆրանք։

ԱՒՍՏՐԻՈՅ հաշտութեան դաշնագրին քննութեան առթիւ, Ռուսերը 150 միլիոն տոլար հատուցում կը պահանջեն։ Անգլիա, Ֆրանսա եւ Մ. Նահանգները կ'առաջարկեն միայն հարիւր միլիոն, վճարելի եօթը տարիէն, ինչպէս եւ Հունգարիոյ, Ռումանիոյ եւ Պուլկարիոյ աւստրիական ստացուածքները։

ԱՆԳԼԻՈՅ գիտական գաղտնի հետազօտութեանց պաշտօնեաներէն չորս գիտնականներ պաշտօնանկ եղան, իբրեւ անդամ համայնավար կուսակցութեան։ Բոլորն ալ տաղանդաւոր երիտասարդներ են։ Ուրիշ մաքրագործումներ ալ պիտի կատարուին, յանուն զինուորական ապահովութեան։

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ կարդինալին դատապարտութեան առթիւ, Փէշթայի ամերիկեան դեսպանը, որ Փարիզ եկած է, յայտարարեց թէ «ամբողջ դատավարութիւնը կեղծիք մըն էր։ Կարելի չէ բացատրել թէ ինչպէս մէկ անգամէն փոխուեցաւ կարդինալ Մինծենթի, որ առիւծ մըն էր»։

ԱԶԳԱՅՆԱՑՈՒԱԾ ԴՐԱՄԱՏՈՒՆՆԵՐՈՒՆ վարիչներէն անոնք որ անդամ են Աշխատանքի Դաշնակցութեան (համայնավար), փոխուեցան կառավարութեան կողմէ եւ նշանակուեցան աւելի չափաւոր տարրեր։ Նախապէս ալ փոխուած էին երկաթուղիներու եւ հանքերու կարգ մը պաշտօնեաներ, նոյն ուղղութեամբ։

### ՕՓԷՐԷԹԱՅԻՆ ԱՆՆԱԽԸՆԹԱՑ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

27 Փետրուար կիրակի ժամը 15էն 24, Centre Administratif et Socialի շքեղ սրահին մէջ, Place de l'Hôtel de Ville, Asnières։ Կը ներկայացուի՝

## ՂԱՐԱՊԱՂԻ ՄԵԼԻՔՆԵՐԸ

Նախաձեռնութեամբ Անիէռ – Պուա Քոլոմպի Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ «Նոր Սերունդի»։ Երաժշտութիւն Ա. Գ. Մեսրոպեանցի։

Բեմադիր՝ Բ. Հայէչեան, Պարուսոյց՝ Տիկին Հեղ. Թորոսեան, դիմայարդար՝ Կ. Օսմանճեան, յուշարար՝ Պ. Ստ. Միսաքեան։

Տոմսերու գիներն են.— 100 ֆր. Նոր Սերունդի եւ 18 տարեկանէ վար եղողներու, 150— 200 ֆր.։ Կարելի է ապահովել Հ. Յ. Դ. Անիէռ Պուա Քոլոմպի «Արամ» ենթակոմիտէի եւ Նոր Սերունդի անդամներէն, Յ. Հիսայեանի խանութէն, 38 բիւ տիւ Մէնիլ եւ Նպարավաճառ Պ. Յ. Նիկողոսեանէ rue Gramme, իսկ թատրոնի օրը կիշէն։

Հաղորդակցութեան համար կան Սէն Լազարէն գնացք առնել եւ իջնել Անիէռ։ Porte de Clichyէն 140 թիւ օթօպիւս, իջնել Place Voltaire, Porte de Champerret 165 թիւ օթօպիւս, իջնել Ave. de la Marne։



### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ Ց. ՕՇԱԿԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այս կիրակի մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին։ Պիտի մասնակցի երկսեռ երգչախումբը ղեկավարութեամբ Պ. Նշան Սերգոյեանի։ Երգէոն Պ. Պարթեւեանէ։ Տէր ողորմեան կ'երգէ երիտասարդ Սերգոյեան։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պետրոսեան ընտանիքը կը ծանուցանէ թէ՝ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցին մէջ (rue Jean Goujon) մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Նիւ Եորքի մէջ վախճանած իրենց ողբացեալ եղբօր՝

ԲԺԻՇԿ ԱՐՄԷՆ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ։ Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները։









### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրուի երեքշաբթի իրիկուն ժամը 9ին, եկեղեցւոյ սրահը։

## ՀԱՅ ԵՐԳԻ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Théâtre d'Alger, Շաբաթ 26 Փետրուար, ժամը 21ին, Վ. ՍԱՐԳՍԵԱՆի ղեկավարութեամբ ԱՐՄԵՆԻԱ երկսեռ խումբը (70 հոգի) լսելի պիտի ընէ բազմաձայն խմբերգներ, մեներգի, դաշնակի եւ սրինգի համար գրուած ընտիր կտորներ, 12 տարբեր հայ երգահաններու գործերէն:

ԿՈՄԻՏԱՍ Վ., ՍԱՅԱԹ ՆՈՎԱ, ԱՇՈՒՂ ՋԻԽԱՆԻ, Ա. ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆ, Գ. ՍԻՒՆԻ, Ն. ՏԻԳՐԱՆԵԱՆ, Ա.ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, Տ.ՉՈՒՀԱՃԵԱՆ, Բ. ԿԱՆԱՉԵԱՆ, Գ. ԱԼԷՄՇԱՀ, Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆ, Վ. ՍԱՐԳՍԵԱՆ:

Տոմսերը՝ երգչախումբի անդամներուն մօտ։

## ՄԱՐՏ 6ԻՆ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ 18ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Կազմակերպուած Հայ Արիներու Միութեան Փարիզի շրջանի Արիներուն եւ Արենոյշներուն կողմէ։ Կիրակի 6 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին, Salle de la Chimie, 28bis rue St. Dominique:

Առաջին անգամ ըլլալով պիտի ներկայացուի հայերէն Molièreի «Les Fourberies de Scapin իննամուած բեմադրութեամբ, ինչպէս նաեւ Արենոյշներու կողմէ «Հայկական Հարսանիքը»։









Imprimerie DER AGOPIAN, 17 Rue Damesme – (13)
La Gérant : A. NERCESSIAN

